## Պոլշեւիկ դաւադրութիւն Պուլկարիոյ մէջ

Պուլկարիոյ մէջ պոլշեւիկեան դաւադրութիւն մը երեւան հանուեցաւ։ Ծրագիրը հետեւեալն էր.— երեք հարիւր համայնավարներ խումբ մը օրթոտոքս ծնունդի գիշերը պիտի ձերբակալէին նախարարները, հրացանի պիտի բռնէին զանոնք, պիտի գրաւէին նախարարութիւնները, դրամատուները եւ Սոֆիայի կայարանը։ Նոյն ժամուն հինգ հարիւր դաւադիրներու ուրիշ խումբ մը պիտի գրաւէր զօրանոցները։ Վերջապէս, երրորդ խումբ մը իրենց տան մէջ պիտի ձերբակալէր բարձրաստիճան զինուորականները, մանաւանդ ոստիկանապետ Զօր. Լազարօֆը։ Գա՛լով Թագաւորին, զայն ալ պիտի ստիպէին գահընկէց ըլլալ ։

Սոֆիայի մէջ ձերբակալուած են 80 հոգի, որոնց մէջ են դաւադրութեան բոլոր կազմակերպիչները։ Ուրիշ ձերբակալու՜թիւններ տեղի ունեցան գաւառներու մէջ։

Համայնավար Սթրաթնօֆ, որ անցած տարի տասը տարի բանտարկութեան դատապարտուած էր, Ֆիլիպէի բանտին եր՜րորդ յարկէն վար նետուելով անձնասպան եղաւ։ Ուրիշ համայնավար մը ինքզինքը կախեց Պուրկազի մէջ։ Ուրիշ երկու համայնավարներ թոյն խմեցին իրենց բանտին մէջ։ Միւս քաղաք՜ներէն ալ համայնավարներու անձնասպանութեան լուրեր կը հասնին։

---



## ՅՈՒՇԱՏԵՏՐ

Հ. Մ. Ը. Մ.ի Փարիզի մասնաճիւղի ընդհ. ժողովը՝ Յունուար 9ին, շաբաթ իրիկուն, ժամը 8.30ին Floria ճաշարանին մէջ, 61 Rue Monsieur le Prince։ Օրակարգ՝ ա) Վարչութեան ընտրութիւն, բ) Շրջանային կազմակերպութիւն։ Կը հրաւիրուին բոլոր անդամները։

ՀԱՅ ՔԻՆՈՒՈՐԱԿԱՆՆԵՐՈՒ միութեան հերթական ընդհ. ժողովը՝ Յունուար 4ին, երեկոյեան ժամը 8.30ին, 71 Av. Kléber։ Օրակարգ՝ Վարչութեան Ընտրութիւն եւ ընթացիկ խնդիրներ։

Հ. Յ. Դ. Լիոնի «Կայծակ» խումբի ընկերները ժողովի կը հրաւիրուին Դշ., երեկոյ խումբի սրահին մէջ։

Զօքկարեան Կիւրիկցի, որ երեք տարի առաջ Պոլիս, դարձակի մը հետ ամուսնացած էր եւ այժմ Ֆրանսա կը գտնուի։

Դիմել H. Tchokgarianի, Epicerie 22 Boulevard des Casernes, Uzès (Gard)։ Տեղեկացնողին արժէքաւոր նուէր մը։

Կը փնտռուի Ատըեամանցի Աստուր Արուշեան կամ Գալաճեան։ Սուրիոյ Հէլէպի որբանոցէն ղրկուած է Ֆրանսա Ամերիկացիներու միջոցով։ Տեղեկացնել իր հօրեղբօրորդւոյն, Krikor H. Kaladjianի, Cantine Valette, Cruas-Ardèche.

---

ԿԱՂԱՆԴԻ ՆՈՒԷՐ

**ՆԱՐԵԿ** աշխարհաբար գաղիգին եպսկ.ի։ Գին 50 ֆրանք։ կարելի է ստանալ Յառաջէն եւ Պալենց գրատունէն։

---

## ՎԱՐՁՈՒ ՍԵՆԵԱԿ

Վարձու են, դիւրամատչելի պայմաններով, օդասուն 2 սենեակներ, պալքօն մը եւ խոհանոց մը։ Դիմել՝ 54 Rue de la Renaissance, Bois Colombes.

---

## ԾԱԽՈՒ ՀՈՂ

ՓՈՔՐ ՄԱՍԵՐ 100 ՄԵԹՐԷՆ ՎԵՐ

Քիչ մը դրամով պզտիկ պարտէզով հողի մը տէր կ'ըլլաք, Սավինիի կայարանին մօտը, ուր արդէն 40է աւելի Հայեր հող գնած են։

Մանրամասնութեան համար դիմել Պ. ԱԿԱՆԵԱՆի, երեկոները ժամը 8էն 10, 14 Rue Keller, Paris 11.

---

## ՆԱՄԱԿԱՑՈՒՓ

Լարժանթիէր, Մ. Ց.— Ստացանք 20 ֆրանք։

Վիլֆրանշ Ա. Խ.— Ստացանք 20 ֆրանք։

Անվէրս Մ. Տ. Ս.— Ստացանք 100 ֆրանք։

Լա Սէն Խ. Գ.— Ստացանք 20 ֆրանք։

Սէնթ-Ալան Զ. Դ.— Նոյնպէս։

Մարսէյ Ա. Ա.— Նոյնպէս։

Շամպէ Յ. Գ.— Ստացանք 35 ֆրանք։

Մարսէյլ Գարծ.— Ստացանք 647.50 ֆրանք։

Լը Փուզէն Շ.— Ստացանք 50 ֆրանք։

Սէնթ-Էթիէն Մ. Խ.— Նոյնպէս։

Վիլ տ'Ավրէ Մ. Մ.— Փոխարժէքը 15 ֆր. է։

Փօրթլէնտ Գ. Ա.— Ստացանք 5 տոլար։ Սկսանք ղրկել 15 Դեկտ.էն։

Պոլէն Գարծ .— Ստացանք 140.25։

Ալէս Հ. Ա.— Ստացանք 38 ֆր։

Մարսէյլ Մ. Մ.— Նոյնպէս։

Շաս Գ. Ա.— Ստացանք 20 ֆրանք։ Կարգադրեցինք։

Քրէօզօ Հ. Վ.— Ստացանք 20 ֆրանք։

Թայէն Գ. Փ.— Նոյնպէս։

Պէլֆօր Յ. Ի.— Ստացանք 30 ֆրանք։

Լանսէմէզան Մ. Գ.— Ստացանք 20 ֆր.։

Վէնսէն Գ. Վ.— Նոյնպէս։ Կարգադրեցինք։

Կրընօպլը Մ. Տ. Ս.— Ստացանք 20 ֆրանք։ Մինչեւ 31 Դեկտ.։

Իզէլ Մ. Շ.— Ստացանք 20 ֆ.

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Տիրուհի Քէյֆսիզեան կը փնտռէ Եօզղատցի Նիկողոս եւ Լոզֆէթ Քէյֆսիզեան, որոնք կը գտնուին Տիթրոյթ քաղաքը։ Տեղեկացնել՝ Dirouhy Keifsizianի Chez Vigier, Pont St. Esprit (Gard) France.

— Հեղինէ Չէտէեան կը փնտռէ իր զաւակը՝ Եօզղատցի Կարապետ Չէտէեանը, որ 915ին աքսորուած էր Տէր-Զօր։ Տեղեկացնել՝ G. Tchatalianի՝ Chez Vigier, Pont St. Esprit (Gard)։

— Հ. Զօքկարեան կը փնտռէ իր հօրեղբօր աղջիկը, Սաթենիկ

## ԱՄՈՒՍՆԱԼՈՒԾՄԱՆ ՎՃԻՌ

Ենիկ Սօֆիայցի, պուլկարուհի Տիկին Միլքա Գէորգ Փօյաճեանի կողմէ, ամուսնոյն ենիկ Նիւսէյի բժշկական ուսանող Գ. Գէորգ Փօյաճեանի դէմ բացուած դատը, խզակալութեան Փօյաճեանի, Սօֆիայի Թաղական Խորհրդոյ կողմէ անուանուած Դատաստանական Յանձնաժողովին մէջ քննուելով, անոնց ամուսնութիւնը լուծելի նկատուած եւ ի նպաստ կնոջը որոշում տրուած է, արտօնելով Տիկին Միլքան վերամուսնութեան, իսկ այրը զրկելով այդ իրաւունքէն։ Հետեւաբար, չորս տարի առաջ Փարիզ մեկնած, իսկ այժմ բնակարանը անորոշ, յիշեալ Գ. Գէորգ Փօյաճեանի կը ծանուցուի որ իրեն իրաւունք տրուած է, մինչեւ 17 Յունուար 1927 դիմել յանձնաժողովիս եւ ընել որ եւ է օրինաւոր առարկութիւն եթէ ունի, որմէ յետոյ սոյն որոշումը վերջնական նկատելով, հարկ եղած տեղեկագիրը պիտի տրուի Պատ. Թաղական Խորհրդոյ Սօֆիայի, որպէսզի նկատի առնուելով, մատուցուի Կ. Պոլսոյ Կրօնական Պատկ. Ժողովոյն։

Ի դիմաց դատաստ. յանձնաժողովի

Նախագահ՝ Խորէն Ա. Քհնյ. Ճամճեան

Անդամներ՝ Յակոբ Կ. Չամամճեան, Թ. Յակոբեան

Սօֆիա 19 Նոյեմ. 1926




Le Gérant : H. TEURNIER

Imp. MASSIS 208bis, Rue Lafayette Paris(10)

